Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ




№ 14 ՀՈՒԼԻՍ 1951

digitised by A.R.A.R.@

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՐԿՐՈՐԴ ԿԻՍԱՄՅԱԿԻ ՊԼԱՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԵՎ ԳԵՐԱԿԱՏԱՐՄԱՆ ՀԱՄԱՐ

Մեր Մեծ Հայրենիքի աշխատավորները, բոլշևիկյան պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, հաջողությամբ կատարեցին հետպատերազմյան ստալինյան հնգամյակի՝ խաղաղության ամրապնդման հնգամյակի պլանը և մեծագույն խանդավառությամբ ձեռնամուխ եղան կոմունիզմի մեծ կառուցումների շինարարությանը, մեր երկրի տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառների նոր, հզոր վերելքի գործին։

Ընթացիկ տարին նշանակալից է սովետական ժողովրդի աշխատանքային նոր, խոշոր հաջողություններով, ամբողջ երկրով մեկ ծավալվել է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թվականի պլանը ժամկետից շուտ կատարելու համար։



1538-54

digitised by A.R.A.R.@

Մեր երկրի աշխատավորները, հաջողությամբ կատարելով առաջին կիսամյակի պլանը, բարձր պարտավորություններ են ըստանձնում՝ տարվա երկրորդ կիսամյակում հասնել նորանոր հաջողությունների և 1951 թվականի պլանը կատարել ժամկետից շուտ։

1951 թվականի արտադրական տարին հաջողությամբ փակելու համար ծավալվող շարժման առաջին շարքերում ընթանում են մեր մեծ Հայրենիքի մայրաքաղաքի՝ Մոսկվայի աշխատավորները։ Սովետական ժողովրդի սիրելի առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինին ուղղած իրենց նամակում Մոսկվայի և Մոսկվայի մարզի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները և ծառայողները, զեկուցելով իրենց արտադրական հաջողությունների մասին, արտահայտելով մեր երկրի բոլոր աշխատավորների մտքերն ու զգացմունքները, ստանձնեցին նոր, սոցիալիստական պարտավորություններ՝ 1951 թվականի պետական պլանը ժամկետից շուտ՝ փետրվարի 20-ին կատարելու համար։

Սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին ընթացիկ տարին աշխատանքային մեծ նվաճումներով նշանավորեց նաև սովետական Հայաստանի աշխատավորությունը, որը հաջողությամբ կատարելով ռեսպուբլիկայի



ժողովրդական տնտեսության զարգացման հետպատերազմյան հնգամյակի պլանը, ձեռնամուխ է եղել կոմունիզմի մեծ կառուցումների պատվերների կատարման գործին, 1951 թվականի պլանը ժամկետից շուտ կատարելու գործին։

Հայաստանի աշխատավորների աշխատանքային սխրագործությունների մասին են վկայում 1951 թվականի առաջին կիսամյակի պլանի կատարման արդյունքները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունն այս տարվա առաջին կիսամյակի պլանը փակեց գերակատարումով։

Այժմ ամբողջ ռեսպուբլիկայում սոցիալիստական մրցություն է ծավալվել 1951 թվականի երկրորդ կիսամյակի պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Այս հայրենասիրական շարժման նախաձեռնողները հանդիսացան Երևանի Ստալինյան ռայոնի աշխատավորները, որոնք 1951 թվականի առաջին կիսամյակը նշանավորեցին համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարելով 104,8 տոկոսով և մեծ չափով լավացնելով մի շարք ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։

Հուլիսի 18-ին հրապարակվեց Երևանի



digitised by A.R.A.R.@

Ստալինյան ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների դիմումը։ Արտահայտելով ռեսպուբլիկայի աշխատավորների մտքերն ու զգացմունքները, այդ դիմումը կոչ է անում՝ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը 1951 թվականի արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու, արտապլանային արտադրանք տալու, արտադրանքի որակը բարձրացնելու և նրա ինքնարժեքն իջեցնելու համար, սարքավորումների լրիվ օգտագործման, գիտության և տեխնիկայի նվաճումները ներդնելու, կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները ժամկետից շուտ կատարելու համար։

Ստալինյան ռայոնի աշխատավորներն ստանձնել են կոնկրետ պարտավորություններ՝ մինչև տարվա վերջը պլանից դուրս տալ 90 միլիոն ռուբլու արտադրանք, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 5 տոկոսով, պետությանը տալ 20 միլիոն ռուբլու արտապլանային կուտակում, ավելի բարելավել ապրանքների որակը և լայնացնել նրանց ասորտիմենտը, տնտեսել էլեկտրաէներգիան և հումքը։

Ստալինյան ռայոնի աշխատավորների



վերցրած պարտավորությունները լուրջ և պատասխանատու պարտավորություններ են, իսկ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի բանվորներին և բանվորուհիներին, ինժեներներին և տեխնիկներին, վարպետներին և ծառայողներին ուղղված նրանց դիմումը կոչ է անում՝ լրիվ չափով մոբիլիզացնել բոլոր ուժերը, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը՝ 1951 թվականի արտադրական պլանը ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։

Ստալինյան ռայոնի աշխատավորների ստանձնած այս պարտավորությունների հաջող կատարման, ինչպես նաև ռեսպուբլիկայի արդյունաբերական մյուս ձեռնարկությունների կողմից նրանց կոչին արձագանքելու, ամենուրեք սոցիալիստական լայն մրցություն ծավալելու գործում մեծ անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Արդյունաբերական ձեռնարկություններում ամենուրեք արդեն սկսվել է Ստալինյան ռայոնի աշխատավորների դիմումի քննարկումը։ Քննարկելով այդ դիմումը, արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները ստանձնում



digitised by A.R.A.R.@

են նոր, ավելի բարձր պարտավորություններ՝ սոցիալիստական մրցության ավելի լայն ծավալումով ապահովել 1951 թվականի պլանի ժամկետից շուտ կատարումը։

Ագիտատորները պետք է բացատրական աշխատանք ծավալեն աշխատավորների մեջ, յուրաքանչյուր բանվորի ու ծառայողի գիտակցությանը հասցնելով, թե մեր մեծ Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, ամբողջ աշխարհում խաղաղության համար մղվող պայքարի գործում ինչ նշանակություն ունի 1951 թվականի պլանի ժամկետից շուտ կատարումը։ Ստալինյան ռայոնի աշխատավորների դիմումի կոնկրետ օրինակների վրա ագիտատորները պետք է բացատրեն, թե ինչ հնարավորություններ են թաքնված սոցիալիստական արդյունաբերության ներսում և ինչպիսի նոր, լրացուցիչ պարտավորություններ կարող է ստանձնել ձեռնարկության կոլեկտիվը, ցեխը, բրիգադը, եթե ավելի լավ կազմակերպվի աշխատանքը, եթե օգտագործվեն եղած բոլոր հնարավորությունները։

Ագիտատորների աշխատանքում հատուկ տեղ պետք է տրվի կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները ժամկետից շուտ



կատարելու կարևորության պարզաբանմանը, մեր երկրում կոմունիզմ կառուցելու համար նրանց ունեցած նշանակությանը։

Ագիտատորները, սակայն, չպետք է սահմանափակվեն միայն այն բանով, թե աշխատողներն ինչ պարտավորություններ կարող են ստանձնել։ Ագիտատորի ամենօրյա աշխատանքը պետք է ուղղված լինի այն բանին, որպեսզի այդ ագիտացիան օգնի բանվորներին, բանվորուհիներին, ծառայողներին՝ կատարելու ստանձնած պարտավորությունները։

Ագիտատորները հանդիսանում են ձեռնարկություններում ամեն մի նորի, առաջավորի տարածողները, բոլոր թերությունների դեմ պայքարողները։

Ագիտատորները պետք է հետևեն սոցիալիստական մրցության, ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքին, խրախուսեն առաջավորներին և օգնեն հետ մնացողներին։

Ագիտացիան պետք է լինի կոնկրետ. իր ցեխի, հերթափոխության, բրիգադի օրինակով ագիտատորը պետք է կարողանա ցույց տալ աշխատանքում եղած հաջողությունները և նկատված թերությունները, հա-



digitised by A.R.A.R.@

տուկ ուշադրություն դարձնի սարքավորումների և մեքենաների լրիվ օգտագործման, սահմանված գրաֆիկով աշխատելու, արտադրանքի որակի վրա։

Մեծ նշանակություն ունի ագիտատորի անձնական օրինակը։ Ագիտացիա անելով ստանձնած պարտավորությունների կատարման համար, ագիտատորը ինքը պետք է քայլի սոցիալիստական մրցության առաջավորների շարքերում։

1951 թվականի արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար ագիտացիա մղելով, ագիտատորները պետք է աշխատավորներին պարզաբանեն սովետական մարդկանց աշխատանքային հաջողությունների ունեցած միջազգային-քաղաքական նշանակությունը։

Ագիտատորների առաջնահերթ պարտականությունն է՝ լայնորեն ագիտացիա ծավալելով արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար, օգնել ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելքին։



# ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Երկաթուղային տրանսպորտի Համամիութենական օրը սահմանված է ի պատիվ 1935 թվականի հուլիսի 30-ին Կրեմլում, ընկեր Ստալինի գլխավորությամբ պարտիայի ու կառավարության անդամների կողմից կազմակերպված երկաթուղայինների ընդունելության։

Ընդունելությանն արտասանած իր ճառում ընկեր Ստալինը առաջադրեց երկաթուղային տրանսպորտի հզոր վերելքի հոյակապ ծրագիրը, որը սովետական ժողովրդին, երկաթուղային տրանսպորտի աշխատողներին ոգեշնչեց աշխատանքային նորանոր սխրագործությունների։ Ընկեր Ստալինը նշեց, որ «...ՍՍՌՄ-ն, որպես պետություն, աներևակայելի կլիներ առանց առաջնակարգ երկաթուղային տրանսպորտի, որը նրա բազմաթիվ մարզերն ու շրջանները կապում է իբրև միասնական ամբողջություն։ Այդ է ՍՍՌՄ-ում



digitised by A.R.A.R.@

երկաթուղային տրանսպորտի պետական մեծ նշանակությունը, ...որն արդյունաբերության օջախները ու կենտրոնները կապում է ու ցեմենտում նրան հումք ու կենսամթերքներ տվող գյուղատնտեսության մարզերի ու շրջանների հետ, որպես մեկ տնտեսական ամբողջություն»։

Մեր երկրի երկաթուղային տրանսպորտը խոշորագույն չափով զարգացավ սովետական իշխանության տարիների ընթացքում։ Տասնյակ հազարավոր կիլոմետրերով նոր և կրկնակի ուղիներ, որոնք կառուցվեցին ստալինյան հնգամյակների տարիներին, օգնեցին ստեղծել խոշոր արդյունաբերական կենտրոններ և դրանք միաձուլել երկրի ընդհանուր ժողովրդական տնտեսության մեջ։

1935 թվականին Կրեմլում տեղի ունեցած երկաթուղայինների ընդունելության ժամանակ ընկեր Ստալինի արտասանած պատմական ճառը տրանսպորտի դերը նոր բարձրության վրա դրեց՝ այն հավասարեցնելով սոցիալիստական շինարարության առմատական խնդիրների հետ։ Ստալինյան ծրագրի կենսագործման շնորհիվ կարճ ժամանակվա ընթացքում ամբողջովին փոխվեց մեր երկրի երկաթուղային տրանսպորտի դեմքը,



իր տեխնիկական զինվածությամբ այն դարձավ ժամանակակից հզոր տրանսպորտ, երկրի ժողովրդական տնտեսության առաջավոր բնագավառներից մեկը, սովետական պետության տնտեսական և պաշտպանական հզոր ֆակտորը։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին մեր երկաթուղիները հանդիսացան ճակատի և թիկունքի միջև եղած կապի վստահելի միջոցը, դիմանալով այնպիսի բեռնվածության, որը դժվար թե կարողանար տանել ուրիշ որևէ երկրի տրանսպորտ։

Սովետական Միության երկաթուղային տրանսպորտը նոր, խոշոր զարկ ստացավ հետպատերազմյան առաջին հնգամյակի տարիներին։ Ոչ միայն վերականգնվեցին պատերազմի ժամանակ շարքից դուրս եկած ուղիները և լրացվեց ոչնչացված շարժական կազմը, այլև ամբողջ տրանսպորտը հագեցվեց նորագույն, հայրենական արտադրության շոգեքարշերով, վագոններով և ամեն տեսակի սարքավորումներով։

1950 թվականին 21 տոկոսով գերազանցվեց բեռնաշրջանառության նախապատերազմյան մակարդակը։ 1950 թվականի համար սահմանված բեռնաշրջանառու-



digitised by A.R.A.R.@

թյան առաջադրանքը գերակատարվեց 13 տոկոսով։ 1950 թվականին օրական միջին բարձումը կազմում էր հնգամյա պլանի առաջադրանքի 103 տոկոսը։ Անցած հինգ տարիներին գնացքների քաշային նորմաները ավելացան ավելի քան 14 տոկոսով, տեխնիկական արագությունը՝ 17 տոկոսով։ Հնգամյակի տարիներին երկաթուղային տրանսպորտը լրիվին բավարարեց երկրի ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջները։

Երկաթուղային տրանսպորտը փոխադրումները հաջողությամբ է կատարում նաև 1951 թվականին։

Սովետական երկաթուղայինները մշտապես զգում են այն խոշոր հոգատարությունը, որը նրանց նկատմամբ հանդես են բերում պարտիան, կառավարությունը և անձամբ ընկեր Ստալինը։ Օր օրին բարելավվում է երկաթուղային տրանսպորտի աշխատողների նյութական դրությունը, աճում նրանց կուլտուրական մակարդակը։ Ստալինյան հոգատարության վառ արտահայտություն է հանդիսանում երկաթուղային տրանսպորտի առաջատար պրոֆեսիաների երկարամյա աշխատողների և հրամանատարական կազմի համար սահմանված հավելյալ վճարումները,



բարձրացված կենսաթոշակները, Սովետական Միության շքանշաններով և մեդալներով պարգևատրելը։

Միայն 1951 թվականին երկարամյա ծառայության համար շքանշաններով և մեդալներով պարգևատրվել են 137 հազար 186 երկաթուղային։

Երկաթուղայինների նկատմամբ ստալինյան հոգատարության ապացույց է հանդիսանում նրանց կյանքի կուլտուր-կենցաղային պայմանների նշանակալի բարելավումը։ Երկաթուղայինների կուլտուր-կենցաղային կարիքների համար այս հնգամյակի ընթացքում ծախսվել է ավելի քան 4 միլիարդ ռուբլի։ Նրանց համար կառուցվել են հազարավոր նոր բնակելի շենքեր՝ ավելի քան 3 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ։

Հատուկ հոգատարությամբ են շրջապատված շոգեքարշերի բրիգադների աշխատողները։ Նրանց համար կառուցվել է 4 հազար սեփական տուն. այդպիսի տուն ստացող յուրաքանչյուր շոգեքարշային վճարելու է նրա արժեքի միայն 50 տոկոսը՝ 10 տարվա ընթացքում։ 1951—1952 թվականների ընթացքում կառուցվելու և հանձնվելու է ևս 3.500 անհատական տուն։



digitised by A.R.A.R.@

Հսկայական գումարներ են ծախսվում երկաթուղայինների առողջապահության համար, դպրոցական ցանցի, մանկապարտեզների և մանկամսուրների, սանատորիաների և հանգստյան տների, մանկական և կանանց կոնսուլտացիաների ընդարձակման համար։ Սովետական կառավարությունը մեծ գումարներ է բաց թողնում տրանսպորտի աշխատողների որակավորման բարձրացման, կադրերի պատրաստման համար։

Տարեց-տարի աճում են երկաթուղայինների մեջ կուլտ-մասսայական աշխատանք տանելու համար կատարվող հատկացումները։ 1950 թվականին այդ կարիքների համար ծախսվեց ավելի քան 198 միլիոն ռուբլի, իսկ այս տարի բաց է թողված ավելի քան 208 միլիոն ռուբլի։ Երկաթուղայինների տրամադրության տակ են գտնվում՝ տասնյակ կուլտուրայի պալատներ, հարյուրավոր ակումբներ, վագոն-ակումբներ, գրադարաններ, մշտական և շարժական կինոսարքավորումներ և հազարավոր կարմիր անկյուններ։ Ավարտվում է դաշտային կայարանների և կիսակայարանների համատարած ռադիոֆիկացումը։

ՍՍՌՄ երկաթուղային տրանսպորտի վերելքը հատկապես ցայտուն է դառնում, երբ



այն համեմատում ենք կապիտալիստական երկրների՝ անկում ապրող տրանսպորտի հետ։ Այսպես, ՍՍՌՄ երկաթուղային ցանցի ապրանքաբեռնվածությունը երեք անգամ շատ է, քան ԱՄՆ-ի տրանսպորտինը, և աշխարհում գրավում է առաջին տեղը։ Երեք տասնամյակների ընթացքում ՍՍՌՄ-ում կառուցվել են 35 հազար կիլոմետր երկաթուղային նոր ճանապարհներ, իսկ ԱՄՆ-ում նույն ժամանակվա ընթացքում գործածությունից հանվել է 53 հազար կիլոմետր երկաթուղի։ 1948 թվականի հետ համեմատած, 1949 թվականին ԱՄՆ-ի երկաթուղիների բեռնաշրջանառությունը կրճատվեց 20 տոկոսով և շարունակվում է շարժական կազմի օգտագործման հետագա վատթարացումը։

Մարշալականացված Ֆրանսիայում փակվում է երթևեկությունը 17 հազար կիլոմետր ընդհանուր երկարություն ունեցող երկաթուղիներում։ 1949 թվականին աշխատանքից ազատվեցին ավելի քան 10 հազար երկաթուղայիններ։ Երկաթուղայինի ամսական միջին աշխատավարձը 14 հազար ֆրանկից չի անցնում, մինչդեռ ապրուստի մինիմում պայմանների համար անհրաժեշտ է 22 հազար ֆրանկ։ Երկաթուղային տրանսպորտի



digitised by A.R.A.R.@

անկում գոյություն ունի նաև կապիտալիս-
տական մյուս երկրներում:

Սովետական Միության երկաթուղային-
ներն իրենց ամբողջ ուժն ու եռանդը նվիրել
են մեր երկրում կոմունիզմի կառուցման վեհ
գործին և աշխատանքային նորանոր սխրա-
գործություններով փառաբանում են մայր
Հայրենիքը:

Վերջին տարիների ընթացքում երկաթու-
ղային տրանսպորտում, առաջավոր նորա-
րարների մտահղացմամբ, առաջ եկավ հինգ-
հարյուրական—մեքենավարների շարժումը:
Այդ շարժման հիանալի առանձնահատկու-
թյունը կայանում է նրանում, որ նա ուղղ-
ված է տրանսպորտի հիմնական միջոցների՝
շոգեքարշերի և վագոնների լավագույն օգ-
տագործմանը և ակտիվորեն այդ գործի մեջ
է ներգրավում ոչ միայն շոգեքարշայիննե-
րին, այլև վագոնայիններին, երթևեկության,
գծի, կապի և ուրիշ շատ պրոֆեսիաների
աշխատողներին: Հայրենասիրական այս
շարժումը գնալով ավելի ու ավելի է ծավալ-
վում, դառնալով սոցիալիստական մրցու-
թյան բարձրագույն ձևը տրանսպորտում:
ՍՍՌՄ երկաթուղիներում այժմ աշխատում



են ավելի քան 4.000 հինգհարյուրական մե-
քենավարներ:

Սովետական Միության բոլոր երկաթուղա-
յինների հետ միասին, երկաթուղայինի Հա-
մամիութենական օրը աշխատանքային նո-
րանոր հաջողություններով են դիմավորում
նաև Երևանի բաժանմունքի երկաթուղային-
ները: Բեռնման կիսամյա պլանը բաժանմուն-
քը կատարել է 102,1 տոկոսով. վագոնների
շրջապտույտի նորման կատարված է 106
տոկոսով: Կիսամյակում առանձնապես լավ
աշխատեցին Լենինականի վագոնային տե-
ղամասի վագոնայինները, որոնք կապիտալ,
միջին և տարեկան նորոգման կիսամյակի
պլանը կատարեցին 111 տոկոսով:

Իրենց կիսամյա պլանները կատարեցին
բոլոր երեք ուղեմասերի գծայինները: 106
տոկոսով կիսամյա պլանը կատարեցին նաև
բաժանմունքի շոգեքարշայինները: Շոգե-
քարշայինների մեջ իրենց փայլուն հաջողու-
թյուններով առանձնապես աչքի ընկան նո-
րարար-մեքենավարներ Գ. Աբաջյանը, Ա.
Խաչատրյանը, Մ. Աբդուլովը, Կ. Կորկոտյա-
նը, Ս. Հարությունյանը, Գ. Գևորգյանը, Գ.
Տադաթելովը և ուրիշներ:

Բաժանմունքի անվանի երկաթուղայիննե-
րից են Լենինականի վագոնային դեպոյի



digitised by A.R.A.R.@

կաթսայագործ, ստախանովական Մ. Անուշյանը, որն այժմ աշխատում է 1956 թըվականի հաշվին: Պահեստի մասեր պատրաստելու համար օգտագործելով երկաթի ավելցուկները, նա հասել է մետաղի և մասերի մեծ խնայողության: Երևանի դեպոյի փականագործ Հ. Պետրոսյանը շոգեքարշի զսպանակները փոխելու վրա ծախսում է 57 րոպե՝ նորմայով նախատեսված 2 ժամվա փոխարեն: Նույն դեպոյի խառատ Ա. Ամիրջանյանը շոգեքարշի մասերը տաշելու համար ծախսում է 19 րոպե, պլանով նախատեսված 50 րոպեի փոխարեն:

Երևանի բաժանմունքի երկաթուղայինների լավագույն աշխատանքի մասին է խոսում այն փաստը, որ բաժանմունքի աշխատողներից 377 մարդ պարգևատրվել են Լենինի շքանշանով, 154 մարդ՝ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով և 369 մարդ՝ մեդալներով:

Բայց մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինը սովորեցնում է՝ երբեք չհանգստանալ ձեռք բերած նվաճումներով: Երկաթուղու Երևանի բաժանմունքում, այս հաջողությունների կողքին դեռևս կան մի շարք թերություններ, նրա դեռ ոչ բոլոր օղակներն են աշխատում ժամացույցի մեխանիզմի պես: Տրանսպոր-



տում աշխատող ագիտատորների առաջնահերթ պարտականությունն է՝ տեսնել, ի հայտ բերել այդ թերությունները, օգնել վերացնելու դրանք, ամբողջ ուժերով պայքարել նորանոր հաջողությունների հասնելու համար, հացահատիկի այս տարվա բերքը օրինակելիորեն փոխադրելու համար:

Երկաթուղային տրանսպորտի Համամիութենական օրվա տոնակատարությունը մի նոր խթան պետք է հանդիսանա երկաթուղու Երևանի բաժանմունքի աշխատանքը նոր բարձրության հասցնելու համար:

Ա. ԱԽՇԱՐՈՒՄՈՎ



digitised by A.R.A.R.@

# ԿՈՒՅԲԻՇԵՎՅԱՆ ՀԻԴՐՈՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԱՆԳՈՒՅՑԸ

Ստալինյան դարաշրջանի վեհությունը, սովետական, սոցիալիստական հասարակարգի հզորությունն առանձնապես վառ կերպով են հանդես գալիս կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վիթխարի պլանների կենսագործման մեջ։ Աշխարհում դեռևս չտեսնված հիդրոտեխնիկական կառուցումների՝ էլեկտրակայանների, ջրանցքների, ոռոգման սիստեմների շինարարությունը վկայում է մեր տնտեսության, կուլտուրայի, գիտության և տեխնիկայի հսկայական աճի և ծաղկման մասին։

Դեպի կոմունիզմ տանող ճանապարհն անցնում է երկրի արտադրական ուժերի հսկայական աճման, սովետական ժողովրդի կուլտուրական մակարդակի հզոր վերելքի վրայով։ Սովետական արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և տեխնի-



կայի հաջողությունները մեզ թույլ են տալիս լուծելու այնպիսի բարդ խնդիրներ, ինչպիսիք մարդկությունը դեռ երբեք չի դրել իր առջև։

Անցյալ տարվա օգոստոսի 21-ին հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ Վոլգայի վրա Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի կառուցման մասին։ Իր մասշտաբով, տեխնիկական մտահղացման կատարելությամբ և աշխատանքների տեմպով այս հիդրոէլեկտրակայանը, հիդրոտեխնիկայի և շինարարության բնագավառում, հանդիսանում է աշխարհի խոշորագույն կառուցումը։

Կույբիշևից ոչ հեռու, այնտեղ, ուր ռուսական վեհապանծ Վոլգա գետը դառնում է հատկապես ջրառատ, այժմ տարածվել է Կույբիշևհիդրոշինի կառուցողների նոր քաղաքը, որը կոչվում է Կոմսոմոլսկ-Վոլգայի վրա։ Այստեղ էլ հենց կառուցվելու է Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը։ Նրա կառուցումը հնարավորություն կտա փայլուն կերպով լուծելու ժողովրդատնտեսական կարևորագույն խնդիրների ամբողջ կոմպլեքս։ Մոտ երկու միլիոն կիլովատ կարողության հիդրոէլեկտրակայանը, միջին ջրա-



digitised by A.R.A.R.@

ռատության տարում, կտա մոտ տասը միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Դրանից ավելի քան վեց միլիարդ կիլովատ-ժամ կտրվի Մոսկովյան էներգոսիստեմին, որը մեծ դեր կխաղա մայրաքաղաքի քաղաքային տնտեսության հետագա աճման, նրա արդյունաբերության, երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացման գործում։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը կվերափոխի Վոլգայի մոտ գտնվող հսկայական երկրամասի արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը, Անդրվոլգյան կոլխոզային գյուղացիությանը ընդմիշտ կփրկի երաշտի և խորշակի կործանիչ ազդեցությունից։

Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների կողմից ջրի մակարդակի բարձրացումը, հսկայական ջրամբարները, շլյուզները, արմատապես կփոխեն Վոլգայի նավագնացության պայմանները։ Վերջ կտրվի ջրապակասությանը, գետը կդառնա ջրառատ և նրա վրայով ազատ կերպով կընթանան մարդատար և ապրանքատար մեծ շոգենավեր։

Ջրային հարստությունների այսպիսի բազմակողմանի, կոմպլեկսային օգտագործումը



հնարավոր է միայն մեր՝ սոցիալիստական պետության մեջ, ուր ժողովրդական տնտեսությունը զարգանում է միասնական պլանով։ Սրա շնորհիվ այն միջոցները, որոնք ծախսվելու են Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի կառուցման համար, կծառայեն և՛ արդյունաբերության, և՛ գյուղատնտեսության, և՛ տրանսպորտի զարգացման գործին։

Աշխարհի այս խոշորագույն հիդրոէլեկտրակայանի մասշտաբները առանձնապես ցուցադրական են դառնում շնորհիվ հետևյալ համեմատությունների։ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը հինգ և կես անգամ ավելի էլեկտրաէներգիա կտա, քան տալիս էին նախառևոլյուցիոն Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանները, կամ թե Իտալիայի բոլոր էլեկտրակայանների արտադրած էներգիայի կեսի չափ։ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի կարողությունը 500 հազար կիլովատով ավելի է այն կարողությունից, որը 1921 թվականին նախագծվեց ԳՈԷԼՌՈ-յի պլանով՝ 10—15 տարվա համար և մի քանի անգամ ավելի է Եվրոպայի ամենախոշոր՝ Լենինի անվան Դնեպրյան հիդրոէլեկտրակայանի կարողությունից։

Կույբիշևյան հիդրոհանգույցի կազմում



digitised by A.R.A.R.@

մտնում են. հիդրոէլեկտրակայանը, ջրթողման բետոնե ամբարտակը, հողե ամբարտակը, նավարկելիության շլյուզները։ Դրանց կառուցման համար անհրաժեշտ կլինի կատարել 150 միլիոն խորանարդ մետր հողային աշխատանք, լցնել մոտ 6 միլիոն խորանարդ մետր բետոն, սարքավորել մոտ 200 հազար տոնն մետաղյա կոնստրուկցիաներ, իրականացնել մեծ ծավալի շինարարական աշխատանքներ։ Այս աշխատանքների տեմպի մասին կարելի է դատել թեկուզ հետևյալ թվից՝ շինարարության վրա յուրաքանչյուր ժամում պետք է դրվի ավելի քան հազար խորանարդ մետր երկաթ-բետոն։

Աշխատանքների այսպիսի թափը պահանջում է ամենանորագույն տեխնիկայի գործադրում։ Սովետական արդյունաբերությունը Կույբիշևհիդրոշինի կառուցողներին մատակարարում է բարձր արտադրողականություն ունեցող բազմապիսի և կատարելագործված մեքենաներ։ Շինարարության վրա աշխատում են հողածծիչ մեքենաներ, որոնք մեկ ժամում հանում և տեղափոխում են հազար խորանարդ մետր հող, ժամում 200—300 խորանարդ մետր արտադրողականություն ունեցող հզոր էլեկտրական



էքսկավատորներ և ուրիշ մեքենաներ։ Շինարարության վրա կգործեն բետոնի խոշոր գործարաններ, որոնք 24 ժամում կտան 4 հազար խորանարդ մետր բետոն։

Գիգանտի կառուցումը նախագծելիս նախագծողներին հարկ եղավ լուծելու դժվար շատ խնդիրներ։ Այսպես, օրինակ, շինարարության վայրն ընտրելիս մասնագետներին հաջողվեց խուսափել մի քանի բերքառատ շրջանների հնարավոր հեղեղումից։ Հակառակ արմատավորված տրադիցիաների, սովետական ինժեներները որոշեցին հրաժարվել ապառաժոտ հիմքերից։ Հենվելով սովետական հիդրոտեխնիկական շինարարության հարուստ փորձի վրա, մասնագետները հնարավոր համարեցին ամբարտակը կառուցել փափուկ հիմքերի վրա։ Այս շատ միջոցներ և ժամանակ կտնտեսի։

Վոլգայի գիգանտ հիդրոէլեկտրակայանը կհանդիսանա էլեկտրական էներգիայի անսպառ աղբյուր։ Որպեսզի ջերմային էլեկտրակայաններում արտադրվի այնպիսի հսկայական քանակությամբ էլեկտրաէներգիա, ինչպիսին տալու է Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը, հարկ կլիներ տարեկան փոխադրել և այրել ոչ պակաս, քան 10 միլիոն



digitised by A.R.A.R.@

տոնն վառելիք։ Արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման շնորհիվ տարեկան կխնայվի մոտ 10 միլիոն տոնն վառելիք։ Այդպիսով, Կույբիշևյան հիդրոհանգույցի շնորհիվ վառելիքի տարեկան ընդհանուր խնայողությունը կկազմի ոչ պակաս, քան 20 միլիոն տոնն։ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի արտադրած մեկ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիան հինգ-վեց անգամ էժան կարժենա, քան ջերմային էլեկտրակայանների արտադրած կիլովատ-ժամը։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի արտադրած 10 միլիարդ կիլովատ-ժամից, անդրվոլգյան տափաստանների ոռոգման համար նախատեսված է մեկ և կես միլիարդ։ Մեկ միլիոն հեկտար տարածության վրա կառուցվում է ոռոգման սիստեմ։ Հզոր ջրհան մեքենաների օգնությամբ, որոնք աշխատացվելու են էլեկտրաէներգիայի միջոցով, Վոլգայի ջրերը կհոսեն ոռոգվող դաշտերով և դրանք կդարձնեն մեր երկրի բերքառատ շտեմարանները։ Այսպիսով, Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը ռացիոնալ կերպով վճռում է Անդրվոլգյան սուր պրոբլեմը՝ կայուն բերքատվության ապահովումը։



Հիդրոէլեկտրակայանի և ոռոգիչ սիստեմների շինարարության ավարտումից հետո գեպի դաշտերը կհոսի կենսատու ջուրը, որը կհագեցնի հողը և կոլխոզնիկներին հնարավորություն կտա աճեցնելու ցորենի և այլ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք։

Հողերի ոռոգումից բացի, նախատեսված է մեծ մասշտաբներով էլեկտրիֆիկացնել Անդրվոլգայի գյուղատնտեսությունը։ Դա նշանակալիորեն կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ, կկրճատի հեղուկ և կարծր վառելանյութի գործածումը, կհեշտացնի կոլխոզնիկի աշխատանքը։ Կոլխոզներում գործածության մեջ կմտնեն էլեկտրատրակտորներ, էլեկտրակոմբայններ, գյուղատնտեսական մթերքները վերամշակող զանազան մեքենաներ։

Մենք արդեն ասացինք, որ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը ամեն տարի 6 միլիարդ կիլովատ-ժամ հաղորդելու է Մոսկվային։ Ավելի քան 800 կիլոմետր տարածության վրա այդքան մեծ քանակությամբ էլեկտրական էներգիա հաղորդելու համար կառուցվելու են էլեկտրահաղորդման բարձրա-



digitised by A.R.A.R.@

վոլտ լարվածություն ունեցող գծեր։ Այդքան բարձր լարվածություն ունեցող էլեկտրական հոսանքն այդքան մեծ տարածությունների վրա հաղորդելը աշխարհում կիրառվելու է առաջին անգամ։

Մոսկովյան էլեկտրոսիստեմը, կապվելով վոլգյան սիստեմների հետ, իր մեծությամբ կդառնա աշխարհում ամենահզորը։ ՍՍՌՄ-ի մայրաքաղաքը, էժան էլեկտրաէներգիայի առատության շնորհիվ, կդառնա ավելի գեղեցիկ և բարեկարգ։ Մոսկովյան հանգույցի բոլոր երկաթուղիները, մայրաքաղաքի բոլոր մերձակա և հեռավոր երկաթուղային մատույցները կէլեկտրիֆիկացվեն։

Մոսկվայում արդեն սկսվել է Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի էներգիայի ընդունման նախապատրաստությունը։ Կառուցվելու է նոր բարձրավոլտ էլեկտրացանց, զգալիորեն մեծացվել են տրանսֆորմատորային սարքավորումների կարողությունները։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի էլեկտրական էներգիան մեծ հեռանկարներ է բաց անում նոր մեքենաների ստեղծման և տեխնոլոգիական նոր պրոցեսների ներդրման համար։ Ամենամասսայական գործածություն կստանա մետաղների վերամշակման նորա-



գույն, բարձրարտադրողական մեթոդների կիրառումը՝ էլեկտրոզոդում, բարձր հաճախականության ինդուկցիոն շիկացում, էլեկտրակոփում, արտադրանքի էլեկտրաչորացում և այլն։ Էլեկտրոմետաղամշակումը կկարողանա ամբողջովին բավարարել մեքենաշինության և արդյունաբերության մյուս ճյուղերի աճող պահանջը՝ գերկարծր ձուլվածքների և պողպատի այլ բարձր տեսակների ստացման ասպարեզում։ Մեծ զարգացում կստանա էլեկտրոքիմիան։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը, ինչպես և Ստալինգրադյանը, կարևորագույն հենակետ է հանդիսանալու մեր Հայրենիքի Եվրոպական մասի ապագա միասնական բարձրավոլտ ցանցի ստեղծման համար։ Այդ հոյակապ սիստեմը շրջանային էներգոսիստեմները կմիացնի բարձր լարվածության մագիստրալային էլեկտրական հաղորդագծերով։ Միասնական բարձրավոլտ ցանցի ստեղծումը՝ ամբողջ երկրի էլեկտրիֆիկացման խնդիրներից մեկն է։

Հիդրոէլեկտրակայանների և ջերմաէլեկտրակայանների կարգավորված համերաշխ աշխատանքը հսկայական օգուտներ կտա ժողովրդական տնտեսությանը՝ կբարձրացնի



digitised by A.R.A.R.@

էլեկտրասարքավորման արտադրողականությունը, կուժեղացնի էլեկտրամատակարարման վստահելիությունը, կիջեցնի կապիտալ ներդրումները և էլեկտրաէներգիայի ինքնարժեքը, կավելացնի վառելիքի խնայողությունը։ Այսպիսի ցանցը հնարավորություն կտա մի քանի, կամ մեկ կենտրոնական կետից կարգավորել էլեկտրաէներգիայի արտադրությունը և գործածումը երկրում։

Այժմ Կույբիշևյան հիդրոհանգույցի շրջանում ծավալվել են գիգանտ աշխատանքներ։ Ուրալյան էքսկավատորները հիդրոէլեկտրակայանի հիմքի համար փորում են փոսորակը։ Մինչև այս տարվա վերջը փոսորակից հանվելու է 2 միլիոն խորանարդ մետր գրունտ։ 1951 թվականի սկզբին շինարարության վրա մեծ աշխատանքներ կատարվեցին հողային պատնեշի կառուցման բազա ստեղծելու համար։ Վոլգայի հատակն իջեցվեցին երկու հաղորդախողովակներ, որոնց միջով ավազ է տեղափոխվելու գետի մեկ ափից մյուսը։ Ժիգուլյովյան լեռներից փոխադրվել և Վոլգայի հատակում շարվել է 40 հազար խորանարդ մետր քար, որը հենարան է ստեղծելու հողային պատնեշի համար։



Օր-օրի ընդլայնվում են կոմունիզմի խոշորագույն կառուցման՝ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի շինարարական աշխատանքները։ Տիրապետելով շինարարական տեխնիկային, անընդհատ ավելացնելով տեմպերը, սովետական մարդիկ մեծ ոգևորությամբ բարձրացնում են Վոլգայի նոր գիգանտը՝ աշխարհի խոշորագույն՝ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը։

Գ. ՄԱՏՎԵԵՎ
Տեխնիկական գիտությունների դոկտոր



digitised by A.R.A.R.@

## ԱՃԵՑՆՈՒՄ ԵՆՔ ԲԱՄԲԱԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ

*Բամբակի բարձր բերք աճեցնելու համար սոցիալիստական մրցումի մեջ վերջին երեք տարիներին մեր կոլխոզում միշտ հաղթանակով է դուրս եկել իմ ղեկավարած օղակը, որը և նվաճել է միջկոլխոզային փոխանցիկ դրոշակը։ Անցյալ տարի մեր օղակն իր մշակած դաշտերի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 41,7 ցենտներ բամբակ, պլանով նախատեսված 22 ցենտների փոխարեն։*

*Հենվելով նախորդ տարիների փորձի վրա, մեր օղակը որոշել է այս տարի ստանալ ավելի բարձր, նույնիսկ ռեկորդային բերք՝ հեկտարից 70 ցենտներ բամբակի հումք։ Եվ մենք այդ բերքը կստանանք՝ այդ մասին են վկայում մեր օղակի փարթամորեն աճած պլանտացիաները։*

*Իսկ ինչպե՞ս եմ ես, որպես օղակավար և օղակի ագիտատոր, ղեկավարում ու կազ-*



*մակերպում պայքարը բամբակի բարձր բերքի համար։*

*Նախ պետք է ասեմ, որ իմ աշխատանքում ինձ մեծապես օգնում է այն փորձը և գիտելիքների պաշարը, որոնք ես ձեռք եմ բերել անմիջապես արտադրության մեջ աշխատելով և ագրոտեխնիկական խմբակներում սովորելով։*

*Իմ աշխատանքի հիմնական մեթոդն է, հանդիսանում՝ օղակի անդամներին բամբակենու մշակման ագրոտեխնիկայի կանոնները բացատրելուց հետո դաշտում, անմիջապես արտադրության մեջ նրանց օգնել այդ կանոնների, անթերի կիրառելու գործում։*

*Ինչպես հայտնի է, բամբակենին պատկանում է գյուղատնտեսական այն կուլտուրաների թվին, որոնք պահանջում են ամենօրյա մեծ խնամք՝ սկսած ցանքի օրերից մինչև բերքահավաքը։ Ահա այդպիսի խնամքն ապահովելու համար էլ հենց ես գործադրում եմ իմ ուժերը, գիտելիքներն և փորձը։ Ես հետևում եմ, որպեսզի լավագույն կերպով մշակվի օղակի հողամասի ոչ թե յուրաքանչյուր հեկտարը, այլ ամեն մի քառակուսի մետրը, որ հեկտարի 90—100 հազար բույ-*



digitised by A.R.A.R.@

սից փարթամորեն աճի յուրաքանչյուրը։ Իսկ այդ հնարավոր է միայն այն ժամանակ, երբ լավագույն կերպով աշխատի օղակի յուրաքանչյուր անդամը։ Ահա հենց դրանից ելնելով էլ, ես ոչ թե հետևում եմ օղակի աշխատանքին ընդհանրապես, այլ մշտապես ստուգում եմ օղակի յուրաքանչյուր անդամի կատարած աշխատանքի որակը և որևէ թերություն նկատելու դեպքում օգնում՝ տեղն ու տեղը վերացնելու այն։ Հետո այդ մասին ես պատմում եմ զրույցի ժամանակ, որպեսզի այդպիսի սխալ չկատարեն օղակի մյուս անդամները։ Այսպես վարվելով, ես միշտ հասնում եմ ցանկացածս արդյունքին։ Այդ կարելի է ցույց տալ հենց բամբակենու մշակման շրջանից վերցրած մի քանի կոնկրետ օրինակներով։

Երբ բամբակենու մեր ամբողջ ցանքերն արդեն ծլել էին, ես անձամբ ստուգեցի յուրաքանչյուր թումբ, տեսնելու համար, թե չե՞ն մնացել արդյոք դեռևս չծլած սերմեր։ Պարզվեց, որ այդպիսիններ կային օղակի անդամներ Վ. Սահակյանի և Հ. Ասլանյանի մշակած հողակտորներում։ Ես հանձնարարեցի օղակի լավագույն բամբակագործ Կաքավ Կարապետյանին՝ օգնելու վերոհիշյալ



կոլխոզնիկուհիներին կարճ ժամկետներում նորոգելու այդ հողակտորները։ Իմ հանձնարարությունը կատարվեց և այդ հողակտորները նույնպես դարձան լիարժեք։

Բամբակի դաշտերի առաջին քաղհանն սկսելուց առաջ տեղի ունեցավ մեր կոլխոզի ագրոկոլեկտիվի սեմինար պարապմունքը, որտեղ մեզ նախազգուշացրեցին խուսափելու այն թերություններից, որոնք կարող են տեղի ունենալ քաղհանի ժամանակ։ Երբ սկսեցինք քաղհանը, նկատեցի, որ այդպիսի լուրջ սխալ թույլ են տալիս իմ օղակի անդամներ Ռ. Շիրինյանը և Ք. Հովսեփյանը. նրանք քաղհանը կատարում էին շատ մակերեսորեն, հողի մեջ թողնելով մոլախոտերի արմատները։ Ես նրանց ցույց տվեցի, թե ինչպիսի ուժով պետք է խփել ուրագը և ինչ խորությամբ պետք է նա մտնի հողի մեջ, որպեսզի մոլախոտը հանվի ամբողջ արմատի հետ միասին։ Դրանից հետո վերոհիշյալ կոլխոզնիկուհիները սկսեցին այդ ձևով կատարել քաղհանը։

Հենց նույն օրը, զրույցի ժամանակ բացատրեցի, թե ինչ հետևանքներ կունենա ոչ խորը քաղհանը և հանձնարարեցի լավագույն բամբակագործ Լուսիկ Արսենյանին ցույց տալու, թե ինչպես է ինքը քաղհանում։



digitised by A.R.A.R.@

Մեծ նշանակություն տալով քաղհանի բարձրորակ կատարմանը, հաջորդ օրը մենք լույս ընծայեցինք օղակի «Իլյիչովկա»-ն, ուր ես գրեցի Ռ. Շիրինյանի և Ք. Հովհաննիսյանի անորակ աշխատանքի մասին, իսկ Լ. Արսենյանը իր հոդվածում պատմեց, թե ինչպես է ինքը քաղհան կատարում։ «Իլյիչովկա»-յում զետեղեցինք նաև օղակի երկու անդամների նկարած ծաղրանկարը, ուր անորակ քաղհան անողները պատկերված էին մոլախոտերի մեջ կորած։ Այդ օրվանից սկսած մեր օղակում ես անորակ քաղհանի դեպք չեմ նկատել։

Դաշտերի նոսրացումը բամբակենու մշակման կարևորագույն ագրոտեխնիկական ձեռնարկումներից մեկն է։ Այդ կատարելու համար յուրաքանչյուր բամբակագործ պետք է ունենա անհրաժեշտ գիտելիքներ և փորձ։ Բավական չէ գիտենալ, թե բամբակենու բույսերն իրարից քանի սանտիմետր պետք է հեռու գտնվեն. դա գործի դեռ տեխնիկական կողմն է։ Յուրաքանչյուր բամբակագործ, նայելով իրար մոտ կանգնած բամբակի բույսերին, պետք է կարողանա որոշել, թե նրանցից որն է առողջ ու խոստումնալից, որպեսզի նոսրացնելիս հեռացնի նվազ, կամ



հիվանդ բույսերը։ Իսկ այդպիսի փորձ ձեռք է բերվում մի քանի տարիների ընթացքում, երբ ուշի ուշով հետևում ես քո աճեցրած բույսերի կյանքին, երբ գիտության տվյալները փորձում ես այդ բույսերի վրա։

Ցանքերի նոսրացման ժամանակ ես նկատեցի, որ մեր օղակի անդամներից մի քանիսը այն ճիշտ չեն կատարում, հաճախ հեռացնում են ուժեղ բույսերը, կամ թողնում են նվազները։ Այդ կոլխոզնիկուհիներից յուրաքանչյուրին ես առանձին-առանձին ցույց տվեցի ու բացատրեցի ինչպես իրարից տարբերել ուժեղ և նվազ բույսերը, հետևեցի, թե ինչպես են նրանք հասկացել իմ բացատրությունները և ինչպես են դրանք կիրառում։

Այդ թեմայի շուրջը ընդարձակ զրույց ունեցա ամբողջ օղակի հետ, որը փաստորեն վերածվեց ագրոտեխնիկական պարապմունքի։ Ես օղակի յուրաքանչյուր անդամից պահանջեցի ցույց տալ մի քանի տասնյակ թույլ և ուժեղ բույսեր և ապա արագ կերպով նոսրացում կատարել։ Այս ամենը կրկնեցի նաև հաջորդ մի քանի զրույցների ժամանակ, մինչև որ հասա այն բանին, որ օղակի յուրաքանչյուր անդամ



digitised by A.R.A.R.@

կարողացավ ագրոտեխնիկական ճիշտ կանոններով կատարել նորացումը։

Ելնելով իմ և մեր կոլխոզի ուրիշ շատ ագիտատորների աշխատանքի փորձից, ես կարող եմ ասել, որ ագիտատորը, եթե ինքը տիրապետում է մշակվող կուլտուրայի ագրոտեխնիկային, սիրում է իր գործը, շատ որոշիչ դեր կարող է կատարել իրեն հանձնարարված օղակի, կամ բրիգադի ցանքերի բերքատվության բարձրացման բնագավառում։

*ՄԱՆԻԿ ԱՐՍԵՆՅԱՆ*
Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան
կոլխոզի ագիտատոր

—o—

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԱՎԵԼԻ ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ 1951 ԹՎԱԿԱՆԻ ՊԼԱՆԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

1. 1951 թվականի պլանի ժամկետից շուտ կատարումը ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողների կարևորագույն խնդիրն է։

2. Յուրաքանչյուր բանվորի և բանվորուհու կողմից արտադրողականության բարձրացումը և պրոգրեսիվ նորմաների տիրապետումը՝ պլանը ժամկետից շուտ կատարելու վճռական պայմանն է։

3. Արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման համար մղվող պայքարը արդյունաբերության աշխատողների առաջնահերթ խնդիրն է։



digitised by A.R.A.R.@

*4. Արտադրության նորարարների փորձի լայն օգտագործումը, սոցիալիստական մրցության ծավալումը և ստախանովյան կոլեկտիվ աշխատանքը՝ ուղիներ են հանդիսանում պլանը ժամկետից շուտ կատարելու համար։*

*5. Ինչպես է մեր բրիգադում, ցեխում, ձեռնարկության մեջ կատարվում 1951 թվականի պլանը։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ռեսպուբլիկայի աշխատավորության նոյակապ նվաճումները: *«Ս. Հ.», 1951 թ. հունիսի 13։*

Դեպի ժողովրդական տնտեսության նոր վերելք: *«Ս. Հ.», 1951 թ. հուլիսի 25։*

## II

## ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԻ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

*1. Խնայողության ռեժիմը արտապլանային սոցիալիստական կուտակումների կարևոր աղբյուրն է։*

*2. Հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի խստագույն խնայողությունը բոլոր աշխատողների պարտականությունն է։*



*3. Մեքենաների և սարքավորումների լրիվ օգտագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի որակի բարելավումը՝ խնայողության ռեժիմի կենսագործման անհրաժեշտ պայմաններն են։*

*4. Մեքենաները, սարքավորումները, գործիքները լավ վիճակում պահպանելը, շռայլումների և անտնտեսվարության դեմ պայքարը՝ յուրաքանչյուր բանվորի ու բանվորուհու պարտքն է։*

*5. Ավելի լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի կոմպլեքսային խնայողության համար, արտապլանային սոցիալիստական կուտակման համար։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն: *Հայպետհրատ, 1947 թ., էջ 19։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության տնտեսական դրության և պարտիայի քաղաքականության մասին: *Երկեր, հատ. 8, էջ 158։*

**Режим экономии—социалистический метод хозяйствования.** «Известия», 9 июня 1951 г.



digitised by A.R.A.R.@

## III

## ԼՐԻՎ ՉԱՓՈՎ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՄԵԽԱՆԻԶՄՆԵՐԸ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ԱՎԵԼԻ ՀԱՄԱՐՁԱԿՈՐԵՆ ՆԵՐԴՆԵԼ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

1. Պարտիայի և կառավարության հոգատարությունը շինարարական աշխատանքների մեքենայացման, շինարարների աշխատանքի հեշտացման նկատմամբ։

2. Արագ կառուցելու տեխնիկային տիրապետելը, էժան, արագ և ամուր կառուցելը՝ շինարարների պատվի գործն է։

3. Ըստ պրոֆեսիաների սոցիալիստական մրցության մեջ ակտիվորեն մասնակցելը շինարարների պարտքն է։

4. Ինչպես ենք մենք կատարում ստանձնած պարտավորությունները։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հետևողականորեն արմատավորել կառուցողների առաջավոր փորձը: «Ս. Հ.», 14 հուլիսի 1951 թ.։

Строить быстро, дёшево и прочно! «Правда», 19 июня 1951 г.



## IV

## ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԺԱՄԿԵՏԻՆ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ, ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1. Բերքահավաքը սեղմ ժամկետներում և պետական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելը՝ տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիր է։

2. Տեխնիկայի լրիվ օգտագործումը, գյուղատընտեսության առաջավորների փորձի լայն կիրառումը, 24-ժամյա անընդհատ աշխատանքի կազմակերպումը՝ բերքը սեղմ ժամկետներում հավաքելու վճռական պայմաններն են հանդիսանում։

3. Լավագույն կերպով նախապատրաստենք չորանոցները, պահեստները և մթերակայանները։

4. Կորուստների դեմ պայքարը և բերքի խնամքով պաշտպանումը՝ բոլոր կոլխոզնիկների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների սրբազան գործն է։

5. Ինչպես է մեր կոլխոզը, ՄՏ կայանը, սովխոզը կատարում բերքահավաքը և պետական պարտավորությունները։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բերքը հավաքել ժամկետին և անկորուստ. «Ս. Հ.», 1951 թ. հուլիսի 1։



digitised by A.R.A.R.@

Ուժեղ պայքար կազմակերպել բերքի կորուստնե-
րի դեմ։ *«Ս. Հ.», 1951 թ. հուլիսի 7։*

## V

## ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԼՐԻՎ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐՆ Է

*1. Բերքահավաքի ընթացքում տեխնիկայի լրիվ և ճիշտ օգտագործումը՝ դաշտային աշխատանքները ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում և գերազանց որակով կատարելու վճռական նախապայման է հանդիսանում։*

*2. Մեքենա-տրակտորային կայանների մեխանիզատորների առաջավոր փորձի կիրառումը, ժամային գրաֆիկով գիշերային և ցերեկային ռիթմիկ և հրնդմիջվող աշխատանքը՝ բերքահավաքը հաջող կատարելու հիմքն է։*

*3. Կոլխոզնիկներին կալերում բազմակողմանի օգնություն ցույց տալը՝ ՄՏ կայանների աշխատողների պարտականությունն է։*

*4. Ավելի լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը դաշտավարական բրիգադների և մեխանիզատորների միջև բերքահավաքը սեղմ ժամկետներում և անկորուստ հավաքելու, վառելիքի խնայողության, տեխնիկայի սոցիալիստական պահպանության համար։*



ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Քաղաքական-մասսայական աշխատանքը բերքահավաքի շրջանում. *«Ս. Հ.», 1951 թ. հուլիսի 5։*

**За образцовую работу машинно-тракторных станций.** «Правда», 14 июня 1951 г.

## VI

## ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՆՇԵԼԸ՝ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆՆԵՐԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՊԱՐՏՔՆ Է

*1. Պարտիայի, կառավարության և ընկեր Ստալինի հոգատարությունը երկաթուղայինների նկատմամբ։*

*2. Գնացքների երթևեկության ապահովումը գրաֆիկով և ուղևորների գերազանց սպասարկումը՝ երկաթուղային տրանսպորտի բոլոր աշխատողների պարտականությունն է։*

*3. Բեռնաշրջանառության տարեկան պլանի գերակատարումը, բեռների պահպանության ապահովումը և փոխադրումների ինքնարժեքի իջեցումը՝ երկաթուղայինների մարտական խնդիրն է։*

*4. Աշնան-ձմեռային փոխադրումներին լավագույն կերպով նախապատրաստվելը՝ տրանսպորտի հետագա բարձրացման գրավականն է։*



digitised by A.R.A.R.@

*5. Ավելի լայնորեն տարածենք հինգհարյուրական մեքենավարների, նորարար դիսպետչերների, երկաթուղային տրանսպորտի գերազանցիկների փորձը։*

*6. Երկաթուղային տրանսպորտի Համամիութենական օրը դիմավորենք արտադրական նոր հաջողություններով։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Երկաթուղային տրանսպորտի նստակ աշխատանքի համար: *«Ս. Հ.», 1951 թ. հունիսի 21։*

Երկաթուղային տրանսպորտի անվթար աշխատանքն ապահովելու համար: *«Ս. Հ.», 1951 թ. հուլիսի 19։*

## VII

## ԱՇԽԱՐՀԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ

*1. «Պրավդա»-ի թղթակցի հետ ընկեր Ստալինի ունեցած զրույցը՝ կայուն և երկարատև խաղաղության համար ժողովուրդների մղած պայքարի մարտական ծրագիրն է։*

*2. Խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժումը՝ ժամանակակից հզոր շարժումն է։*

*3. Կորեական ժողովրդի հերոսական պայքարը, պայքարը Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման դեմ, ազգային-ազատագրական շարժման աճը գաղութային և կախյալ երկրներում։*



*4. Սովետական Միության գլխավորությամբ դեմոկրատիայի և սոցիալիզմի ճամբարի ամրապնդումը և աճումը՝ ամբողջ աշխարհում խաղաղության հաստատման համար ժողովուրդների մղած պայքարի հաղթանակի գրավականն է։*

*5. Կոմունիստական շինարարության նոր հաջողություններով ամրապնդենք խաղաղությունը ամբողջ աշխարհում։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով, 1951 թ.։*

ՍՍՌՄ Կառավարության նոտան ԱՄՆ-ի կառավարությանը Ճապոնիայի հետ կնքվելիք հաշտության պայմանագրի մասին: *«Ս. Հ.», 1951 թ. հունիսի 12։*

Բարձրացնել մասսաների ակտիվությունը խաղաղության համար մղվող պայքարում: *«Պրավդա»-ի 1951 թ. հուլիսի 5-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հուլիսի 6-ի համարում։*

—⊙—

digitised by A.R.A.R.@

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

ՎԵՐԱ ՊԱՆՈՎԱ.— «Պայծառ ափ»: *Ստալինյան մրցանակի արժանացած վիպակ: 281 էջ, գինը 7 ռ. 35 կոպ.:*

ԱՐԿԱԴԻ ՊԵՐՎԵՆՑԵՎ.— «Պատվասիրություն փոքրուց»: *Ստալինյան մրցանակի արժանացած վեպ: 559 էջ, գինը 14 ռ. 50 կոպ.:*

Մ. ԳՈՐԿԻ.— «Երկերի ժողովածու», *7-րդ հատոր: Հատորը կազմված է «Ռուսիայում», «Հեքիաթներ Իտալիայից», «Ռուսական հեքիաթներ» և «Պատմվածքներ» բաժիններից: 638 էջ, գինը 13 ռ. 50 կոպ.:*

ԷԼԻՆ ՊԵԼԻՆ.— «Պատմվածքներ»: *186 էջ, գինը 4 ռ. 60 կոպ.:*

ԱԼ.ՇԻՐՎԱՆԶԱԴԵ.— «Արտիստը»: *53 էջ, գինը 2 ռ. 80 կոպ.:*

Ա. ՏՎԱՐԴՈՎՍԿԻ.— «Պոեմներ»: *Գրքում զետեղված են «Երկիր Մուրավիա», «Ճամփեզրի տունը» և «Տ. Տվարդովսկի» պոեմները: 158 էջ, գինը 5 ռ. 90 կոպ.:*

ԱՂԱՎՆԻ.— «Երևանյան երգեր»: *Բանաստեղծությունների այս ժողովածուն կազմված է «Իմ հայրենի աշխարհը», «Գարնան ճամփեքով» և «Ցասման երգեր» բաժիններից: 67 էջ, գինը 1 ռ. 20 կոպ.:*



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

digitised by A.R.A.R.@

